# ՏԵՂԵԿԱՏՈՒ

DEGHEGADOU

ديغيغادو

Հրատարակութիւն Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի

نشرة جمعية القاهرة الخيرية الأرمنية العامة


## «ԱՐՇԱԿ Բ.» ՕՓԵՐԱՆ



*Տիգրան Չուխաճեանի «Արշակ Բ.» օփերայի ներկայացումէն տեսարան մը. ներկայացուած Երեւանի «Սպենդեարեան» Օփերայի և Պալէի թատրոնին մէջ:*

ՏԵՂԵԿԱՏՈՒ
Պարբերաթերթ
Պաշտօնաթերթ Գահիրէի
Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան
Հեռ. 5919636

DEGHEGADOU
Periodical
Published by
Armenian General Benevolent Union - Cairo
Tel. 5919636

ديغيجادو
نشرة دورية
لجمعية القاهرة الخيرية الأرمنية العامة
ت : ٥٩١٩٦٣٦



*Թիւ 11 Նոր Շրջան*

*ԱՊՐԻԼ* 1999

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Ի Ւ Ն



الناشر: جمعية القاهرة الخيرية الأرمنية العامة - ١٥ ش عماد الدين القاهرة



# " ԱՐՇԱԿ Բ." ՕՓԵՐԱՆ

## ՊԱՏՄԱԿԱՆ ԱԿՆԱՐԿ

«Արշակ Բ.» օփերան կը հանդիսանայ զարթօնքի շրջանի հայկական մասնագիտացուած երաժշտութեան առաջին փայլուն նուաճումներէն մէկը, հայկական օփերայի արուեստին դափնեպսակը:

Երիտասարդ երաժշտահան Տիգրան Չուհաճեանի (1837-1898) հրաշակերտն է, որուն լիպրէթթոն՝ իտալերէն լեզուով, գրած է յայտնի բանաստեղծ Թովմաս Թէրզեան (1840-1909): Օփերային բուն խորագիրն է՝ Arsace II:

Իր արժէքաւոր յօդուածին մէջ, Նուպար Ալիքսանեան «Արշակ Բ.»-ի յօրինումին թուականը նշած է 1868 [1] : Ըստ յօդուածին նախորդող Թէոդիկի ծանօթագրութեան, Ալիքսանեան այս ուսումնասիրութեան համար՝ բացի իր պրպտումներէն, անմիջական տեղեկութիւններ ստացած է Չուհաճեանի այրիէն ու պարագաներէն և Սմբատ Քէսէճեանի հետ անձնական թղթակցութենէն: Ն. Ալիքսանեանի նշած թուականը՝ իբր միակ հաւաստի աղբիւր, յետագային կ'ընդունուի իբրեւ հայկական օփերայի ծնունդի տարեթիւ:

1972 թուականին, թատերագէտ Գառնիկ Ստեփանեան կասկածի կ'ենթարկէ այդ թուականը, գտնելով՝ որ օփերան հեղինակուած պէտք է ըլլայ 1863-ին: Ան իր վարկածը կը հիմնաւորէ հետեւեալ կերպով.

1- 1868 թուականը աննպաստ էր «Արշակ Բ.»-ի նման հայրենասիրական օփերայի մը ստեղծագործումին համար, քանի որ ազգային նիւթերով թատերգութիւնները և հայկական մամուլը այդ տարիներուն կ'ենթարկուէին դադարեցումի ու հալածանքի: Օրինակ, «Վարդան Մամիկոնեան» թատերգութեան պատճառով (երաժշտութիւն՝ Չուհաճեանի) կը փակուի «Արեւելեան թատրոն»-ը , Պէշիկթաշլեանին և Գալֆայեանին «Արշակ Բ.» ողբերգութիւնները արդէն չէին բեմադրուեր, Պետրոս Դուրեան՝ Մ. Նալբանդեանին մասին թատերգութիւն մը կը գրէ, զոր կը վախնան բեմբադրելու, Պոլսոյ և Զմիւռնիոյ մէջ կը կասեցուին հայերէն թերթերու հրատարակութիւններ, եւայլն:

2- Սմբատ Քէսէճեան իր անտիպ յուշերուն մէջ կը գրէ՝ թէ երբ Չուհաճեան 1864-ին Իտալիայէն կը վերադառնայ Պոլիս, հետը կը բերէ «Արշակ Բ.» օփերան: Հետեւաբար, Գ. Ստեփանեան կ'եզրահանգէ՝ որ օփերան յօրինուած պէտք է ըլլայ 1863-ին, ճիշտ Զէյթունի ապստամբութենէն ետք, յետագային՝ 1864-1865 թուականներուն Պոլսոյ մէջ կատարելով որոշ լրացումներ: Գ. Ստեփանեան կը նախընտրէ Ս. Քէսէճեանին վարկածը՝ Ն. Ալիքսանեանէն, քանի որ «նա Չուհաճեանի կեանքի վերջին տարիներին ո՛չ միայն եղել է նրա խմբում, այլեւ համագործակցել է նրան որպէս իմպրեսարիոյ: Անշուշտ անձամբ կոմպոզիտորից լսած պիտի լինէր նրա առաջին տարիների գործունէութեան մանրամասնութիւնները» [2]:


Տիգրան Չուխաճեան

Ինչպէս կ'երեւի, Չուհաճեանին ժամանակակից անմիջական փաստեր կը բացակային՝ հաստատելու կամ հերքելու մէկը կամ միւսը: Յստակ է միայն՝ որ «Արշակ Բ.» օփերան, մէկ կողմէ՝ ծնունդն է ԺԹ. դարու վաթսունական թուականներուն ազգային-մշակութային բուռն վերելքին, միւս կողմէ՝ պտուղն է Իտալիոյ մէջ Չուհաճեանին ստացած մասնագիտական կրթութեան:

Գալով նախերգանքին, Ն. Ալիքսանեան կը գրէ՝ թէ Չուհաճեան զայն «ձայնագրած է ի սկզբան, երբ միւս մասերը չկային դեռ» [3]: Նախերգանքը ամբողջութեամբ յօրինուած ըլլալով օփերային հիմնանիւթերուն վրայ՝ ժամանակագրական առումով չէր կրնար նախորդել օփերային: Կրնայ ըլլալ ուրիշ նախերգանք մը եւս հեղինակած է՝ զոր յետոյ անտեսած է:

Նախերգանքի ստեղծագործութեան մասին հետաքրքրական միջադէպ մը կը պատմէ Ս. Քէսէճեան, ըստ որում «երբ Չուհաճեան Պոլիս վերադարձաւ՝ արդէն այդ օփերան բացի նախերգէն՝ կազմ ու պատրաստ էր: Ամէն անգամ երբ Չուհաճեան Օրթագիւղէն Բերա այցելութեան կու գար Ապտուլլահի լուսանկարչատունը, մէկ մէկ պատրուակներով Չուհաճեան օճիքը կ'ազատէր՝ միշտ խոստանալով քիչ օրէն Արշակ Բ.ի նախերգը պատրաստելու՝ բայց խոստումը չէր կատարեր: Օր մը Չուհաճեան դարձեալ Ապտուլլահի լուսանկարչատունը գացած էր: Ապտուլլահ այն օրը նախերգին մասին բան մը չըսաւ, և խնդրեց իրմէ որ այդ գիշեր իրենց մօտ հիւր ըլլայ. և երիտասարդ երգահանը կը համակերպի: Գէորգ Ապտուլլահ



Չուհաճեանի համար յատկացուցած սենեակին մէջ՝ ուր դաշնակ մըն ալ կար, քանի մը տասնեակ երաժշտական թերթեր, մատիտ, ջնջելի և այլն նախապէս պատրաստել տուած էր. եւ այդ գիշեր երբ Չուհաճեան պառկելու համար իր սենեակը կը քաշուէր, Ապտուլլահ մինչեւ իր ննջասենեակը ընկերանալով իրեն կը յայտարարէ որ մինչեւ որ Արշակ Բ.ի նախերգը չպատրաստէ՝ բանտարկուած պիտի մնայ այդ սենեակին մէջ, և այդ ըսելով դուռը վրայէն կը կղպէ և բանալին իր քովը կը պահէ: Չուհաճեան այս եղելութիւնը կատակ կարծելով՝ այն գիշեր հանգիստ կը քնանայ. եւ միայն առաւօտուն կը հասկնայ որ եղածը կատակ մը չէ: Չուհաճեան ճարահատ կը սկսի այն օրը իր բանտին մէջ նախերգին պատրաստութիւնը: Ապտուլլահ իր ընտանիքի անդամներուն այդ օրուան համար պատուիրած էր որ թէ նախաճաշը և թէ ցորեկուան ճաշը վերի յարկի պատուհանէն կողովով մը վար իջեցնելով կերակրեն զինքը: Չուհաճեանի յատկացուած այդ սենեակը՝ տանը պարտէզին կողմն էր, և այդ ճաշը իրեն տրուած միջոցին՝ Ապտուլլահի դրացիներէն օրիորդ մը՝ Չուհաճեանի այդ կերպով կերակրուիլը տեսնելով՝ այդ եղելութիւնը կ'երթայ կը պատմէ իրեն դրացի քանի մը օրիորդներու, որոնք մինչեւ իրիկուն արգելք կ'ըլլան այդ նախերգը վերջացնելու: Երեկոյին Ապտուլլահի տուն վերադարձին՝ Չուհաճեան հազիւ այդ նախերգին կէսը աւարտած էր. երեկոյեան ճաշն ալ այդ կերպով կը տրուի. վերջապէս ճարահատ Չուհաճեան այդ գիշեր մինչեւ արշալոյս աշխատելով կը վերջացնէ: Առտուն կանուխ, Ապտուլլահ կ'ուզէ դաշնամուրի վրայ իմանալ. Չուհաճեան ներսէն կը պոռայ, կը կանչէ «Դուռը բաց. աւարտեցի. եթէ չես հաւատար եկուր տես.» -«Ո՛չ,-կը պատասխանէ Ապտուլլահ,- նուագէ որ իմանամ.» Տանը մէջ բոլորը անկողիններէն ելած էին այդ աղմուկին պատճառաւ. վերջապէս Չուհաճեան նախերգը կը նուագէ և Ապտուլլահ դուռը կը բանայ և այդպէս Չուհաճեան կը յաջողի Ապտուլլահի ձեռքէն օձիքը ազատելու» [4]:

Բեմադրուա՞ծ է արդեօք «Արշակ Բ.»-ը: Մասնագէտներուն մեծ մասը կը հերքեն զայն: Սակայն կը գտնուի քանի մը տեղեկութիւն՝ զոր հարկ է անդրադառնալ:

Թրքական թատրոնի պատմաբան Աւոյֆ Թալասօ կը նշէ՝ թէ Չուհաճեանի «առաջին գործը եղաւ «Արշակ Բ.» օփերա չորս արարւածով, որ Նաումի թատրոնին մէջ խաղացուեցաւ երեւելի արուեստագէտներով» [5]: Նոյն տեղեկութիւնը քանի մը տարի ետք կը կրկնէ նաեւ Տարասսն [6]:

Ուշադրութեամբ համեմատելով Թալասոյի և Տարասսի շարադրանքները, դժուար չէ եզրակացնել՝ թէ Չուհաճեանին վերաբերող ամբողջ հատուածը Տարասսն ուղղակիօրէն օգտուած է Թալասոյի երկու յօդուածներէն՝ որոնք թարգմանաբար տպագրուած են «Անահիտ»-ին մէջ, Ա. Չօպանեանի որոշ ուղղումներով: Միեւնոյն տեղեկութիւնները՝ Չօպանեանի սրբագրութիւններով հանդերձ, միեւնոյն նախադասութիւնները՝ կերպարանափոխուած, միեւնոյն բառերը [7]: Ուրեմն, Տարասսն դուրս կը մնայ մեր դիտարկումի տեսադաշտէն:

Նշան Պէշիկթաշլեան, Չուհաճեանին նուիրուած ծաւալուն յօդուածաշարին մէջ, կը մէջբերէ Ս. Քէսէճեանին յուշերը, ըստ որում «Արշակ Բ.» օփերան, 1869ին վերջերը, առաջին անգամ ներկայացուեցաւ, Բերա, Նաումի թատրոնին մէջ, իտալական օփերայի խումբին կողմէ, հոծ բազմութեան մը ներկայութեան: Այնտեղ էին Արեւելեան Թատրոնի մասնախումբը և գրեթէ բոլոր հայ դերասանները: Այդ ներկայացման համար իտալական խումբը մեծ ծախսեր ըրած էր: Խաղը երեք անգամ ներկայացուելով հազիւ հազ կրցան ծախսերը գոցել: Վերջին ներկայացման հասոյթին կէսը Չուհաճեանին յատկացուեցաւ, իբր հեղինակի իրաւունք: Այդ ներկայացումը «Արշակ Բ.»ի վերջին բեմադրութիւնը եղաւ» [8]: Յուշերուն այս հատուածը՝ ինչպէս կը նկատէ Գ. Ստեփանեան, անհասկնալի պատճառով, չկայ Երեւանի դիւանին մէջ գտնուող Քէսէճեանի անտիպ յուշերուն մէջ [9]:

Արդ, «Արշակ Բ.»-ի բեմադրութեան մասին ունինք օփերայի ստեղծագործումէն երեսուն տարի հեռաւորութիւն ունեցող երկու վկայութիւն՝ Ա. Թալասօ եւ Ս. Քէսէճեան (վերջինը երկրորդական աղբիւր), որոնք իբր վաւերական փաստեր ընդունիլ տակաւին կանուխ է [10]:

Կայ քանի մը տեղեկութիւն՝ «Արշակ Բ.»-ի հատուածական կատարումներու մասին: Յովհաննէս Մէնէմեան կը գրէ՝ «1870էն առաջ Տիգրան Չուհաճեանի մեծ նուագախմբի, այս է *Օլիմբիայի*, աշակերտ մասնաբն երգուեր էին լուսահոգի Պալեան Յակոբ աղէի ապարանքը, մեծանուն Ամիրայիս ծախիւք և ի ձեռն Նաումեան թատրոնի քաջ գուսանաց. որոտնձայն ծափահարութեամբք ընդունուեր էր հայ երաժշտապետի այս հոյակապ երկասիրութիւնը. բայց հեղինակին սիրտը շարժեցին մանաւանդ իտալացի գուսանաց ուրախակցութիւնք և գովեստք, որք իրեն *վարպետ* (maestro) անունը կու տային» [11]: Նկատենք, որ այս յօդուածը տպագրուած է Չուհաճեանի կենդանութեան և գրուած իր օփերէթներուն առաջին թեւերին կողմէ:

1872 թուականին, Թիֆլիսի «Մշակ»-ը գերմաներէն թերթէ մը քաղելով, թարգմանաբար կը հրատարակէ հետեւեալ լուրը. «Kolnische Zeitung մեծ քաղաքական լրագրում կարդում ենք, որ Կ. Պոլսումը մի հարուստ հայի *Տիրան բէյի* տանը, նորերումս պ. Տիգրան



Չուհաճեանից հեղինակած «Արշակ Բ.» հայոց *օպէրայի* հատուածները ներկայացրին: Հեղինակը կամենում է Վիեննայի գալու աշխարհահանդէսին ներկայացնել իր գրուածքը: Նիւթը հայոց պատմութիւնից է առնուած և հերոսը Արշակ Բ-ը 369 թուին, իր զօրապետներից թողած, Շապուհի հրամանով կուրացուեցաւ և սպանուեցաւ: Օպէրայի երաժշտութիւնը հայրենացի եղանակներին սեփական, հեղինակը կարողացել է եւրոպական համարձակ ձեւով մշակել» [12]:

Այս երկու տեղեկութիւնները՝ իբրեւ ժամանակակից աղբիւրներ, վստահութիւն կը ներշնչեն:

Գալով Վիեննային, Տիգրան Գալէմճեան կը պատմէ՝ թէ 1873-ին միասին կը մեկնին այնտեղ՝ ուր Չուհաճեան «հանդիպեցաւ չկամութիւններու և փնտռեց Պոլիսը: Մեր գրպաններուն դրամը չհատած՝ դարձանք Պոլիս» [13]: Ուրեմն, Kolnische Zeitung լրագիրին հաղորդածը Վիեննայի մասին՝ ճիշտ է, որ սակայն, կը պսակուի անյաջողութեամբ:

Երրորդ վկայութիւն մը՝ դարձեալ կապուած Թալասոյին հետ, կը հաղորդէ՝ թէ օփերայէն բազմաթիւ հատուածներ «Վիեննայի և Նաբոլիի մեծ նուագահանդէսներու մէջ զարնուեցան եւ հայ երգահանին անունը շուտով տարածեցին» [14]: Ո՞րքան ճիշտ է արդեօք այս տեղեկութիւնը:

Եթէ «Արշակ Բ.» օփերան՝ կատարողական հնարաւորութիւններու բացակայութեան և քաղաքական աննպաստ պայմաններուն պատճառով, հեղինակի կենդանութեան հատուածաբար սակաւաթիւ անգամներ կատարուած է, նուագախումբի նախերգանքը, ընդհակառակը, բազմիցս մեկնաբանուած է Պոլսոյ, Զմիւռնիոյ, Փարիզի, Գահիրէի մէջ և այլուր, ամենուրեք գտնելով ջերմ ընդունելութիւն:

Այսպէս, 1869 Հոկտեմբերին, Պոլսոյ Նաումի թատրոնին մէջ զայն կը մեկնաբանէ սեմֆոնիք նուագախումբը՝ ֆրանսացի երաժիշտ Հենրի Քաթտըրի ղեկավարութեամբ [15]: Հաւանաբար, այս կատարումն է՝ զոր ունկնդրած է Միհրան Չերազ [16]:

Ս. Քէսէճեան կը նշէ՝ թէ «Արշակ Բ.ի օփերային նախերգը շատ մը պատմութիւններ ունի: Արշակ Բ. օփերային նախերգը շատերու ծանօթ է. ժամանակին 1869-ին Օրթագիւղ Յանկոբ պէյ Պալեանի ապարանքին մէջ մէկ նուագահանդէսին՝ իտալացի քուարթէթօի մը կողմէ՝ առաջնորդութեամբ Տիգրան Չուհաճեանի նուագուելէ ի վեր: Բացի պալատականներէն հարիւրէ աւելի հերայէն, Օրթագիւղէն բարձր դասու պատկառելի ընտանիքներ հրաւիրուած էին այդ նուագահանդէսին» [17]:

1882-ին, Պոլսոյ Վերտի թատրոնին մէջ, Ամերիկայի դեսպանին հովանաւորութեամբ «Մամուլ» երգիծաթերթին ի նպաստ տրուած ներկայացումին ընթացքին, Ս. Դաւթեան առիթ կ՚ունենայ Չուհաճեանի ղեկավարութեամբ ունկնդրելու օփերային նախերգանքը [18]:

Ուսուսնական թուականներուն (ստոյգ տարեթիւը չէ նշուած) «իտալացի Ռիչի անուն քաջ երաժիշտը, որ մեծապէս կը յարգէ Տիգրան Չուհաճեանի տաղանդը, իւր տուած մի նուագահանդէսի մէջ, նուագել տուաւ զնոյն նախերգ՝ յիւունն չափ իտալացի և գերման նուագածուաց՝ ի մեծ հիացումն եւրոպացի ունկնդրաց, որք կրկնել տուին զայն» [19]:

1889 Մայիս 7-ին, Թեթոնիայի սրահին մէջ, «Քնար» երաժշտական ընկերութեան մասնակցութեամբ դարձեալ կը հնչէ նախերգանքը: «Մէյէրպէրի *Տիեօրայի* ճարտարահիւս նախերգին քով Չուհաճեանի *Արշակ Բ.*ի նախերգն (Ոլիմբիա) չնսեմացաւ, - բերկրութեամբ կը գրէ «Արեւելք»-ի թղթակիցը, - ընդհակառակն իբրեւ արեւելեան խանդավառ երեւակայութեան հրաշագեղ ծնունդ՝ դիւթեց յափշտակեց զամէնքն, երբ *Քնարի* նուագախումբը թարգմանեց երաժշտական այդ պերճ քերթուածն, ու *կեցցէ*ներու ծափահարման գոռիւնք թնդացուցին սրահն» [20]:

1892 Յունուարին, Փարիզի Սրլենտին-Թաւեռնին մէջ, Չուհաճեան առիթ կ՚ունենայ հնչեցնելու նախերգանքը՝ «որ մեծապէս գնահատուեր է» [21]:

1896 Մարտ 31-ին, Պոլսոյ Քոնքորտիա թատերասրահին մէջ, թատերական-երաժշտական ներկայացումին ընթացքին, երաժշտահանի ճգտոին տակ նուագախումբը կը կատարէ զայն [22]:

1896 Մայիս 25-ին, Զմիւռնիոյ Սբորթինկ-Քլիպ թատրոնին մէջ, տեղւոյն նուագախումբը Չուհաճեանի ղեկավարութեամբ կը մեկնաբանէ նախերգանքը, որ «որքան երկար՝ նոյնքան ճարտար էր ու ախորժելի» [23]:

1897 Յունուար 12-ին, Զմիւռնիոյ Ս. Հոփփսիմեան վարժարանին մէջ, զայն քառաձեռն դաշնակով կը նուագեն օր. Մալվինա Քէօլէյեան և պր. Տ. Տէոէյեան: «Սոյն ճարտարարուեստ կտորն, արդէն շատերուն ծանօթ, այս անգամ եւս իբրեւ հայ արուեստագիտին բեղմնաւոր տաղանդին ծնունդն, զամենքն հիացուց» [24], կը գրէ հիացող թղթակից մը:

Այնուհետեւ, յետ մահու, 1905 Մայիս 6-ին, Գահիրէի Էզպէքիէ թատրոնին մէջ, Յ. Սինանեանին կազմակերպած «նուագահանդէսի առաջին մասը վերջացաւ Չուհաճեանի «Օլիմբիա» (Արշակ Բ. ողբերգ.) Օփերայի տպաւորիչ նախերգանքովը, որ Պ. Սինանեան յարմարցուցած է երկու ձեռքով դաշնակի և



փոքրիկ երաժշտական խմբով նուագելու համար»[25]։

1906 Սեպտեմբեր 25-ին, Մաքրագիւղի թատրոնին մէջ «Սինանեան նուագախումբն ածեց Տիգրան Չուհաճեանի Օլիմբիայի այնքան դժուարին նախերգը (ouverture) որ բուռն ծափերով վերջացաւ»[26]։

1917 Սեպտեմբեր 2-ին, Գ. Եաղուպեանի ղեկավարութեամբ ան կը հնչէ Փարիզի Քոնսէռ-Ռուժին մէջ[27]։

Նախերգանքը՝ դաշնակի փոխադրութեամբ, երկիցս արժանացած է նաեւ հրատարակութեան։ Նախ, Չուհաճեան քառաձեռն դաշնակի փոխադրելով՝ զայն կը յանձնէ տպագրութեան։ Ապա, երաժշտահանին վաղահաս մահէն ետք, իր աշակերտներէն երկու նուիրեալ երաժիշտներ՝ Յ. Սինանեան և Ս. Քէսէճեան, կ'որոշեն մահարձան մը կանգնեցնել սիրելի ուսուցիչի դամբարանին վրայ։ Այս նպատակով, քառաձեռն դաշնակի համար տպագրուած նախերգանքը Սինանեան կը վերածէ երկձեռն դաշնակի և 1902 թուականին ինք և Քէսէճեան իրենց անձնական ծախքով կը հրատարակեն անկէ շուրջ 700 օրինակ, որուն վաճառքէն ստացուելիք հասոյթը կը մտադրեն յատկացնել մահարձանի ծախսերուն։ Թէեւ վաճառքը կ'ընթանայ դանդաղ, սակայն մեր անխոնջ երաժիշտները ի վերջոյ կը հասնին իրենց նպատակին և ստացած հասոյթով Զմիւռնիոյ գերեզմանատան մէջ կը կանգնեցնեն Չուհաճեանի կիսանդրին[28]։

1940-ական թուականներուն, Խորհրդային Հայաստանի մէջ արդէն ապաստան գտած ըլլալով «Արշակ Բ.»-ի ձեռագիր նուագագրութիւնը (full score) գաղափար կը ծագի բեմադրելու զայն։ Սակայն, ըստ բեմադրութեան հեղինակներուն, թէ՛ լիպրէթթոյին և թէ՛ երաժշտութեան մէջ կը գտնուէին բազմաթիւ թերութիւններ՝ որոնք սրբագրելու միտումով կը ձեռնարկեն օփերային ամբողջական վերամշակումին։ Ա. Գուլակեան կը գրէ բոլորովին նոր լիպրէթթօ մը, իսկ Ա. Ծահվերդեան և Լ. Խոջա-Էյնաթեան կը խմբագրեն երաժշտութիւնը։ Խօսքը տանք հեղինակներէն մէկուն։ Ա. Ծահվերդեան լիպրէթթոյին մասին կը գրէ՝ թէ «դրամատուրգ Ա. Գուլակեանին յանձնարարուեց մշակել նոր լիբրետօ, որը համապատասխանէր պատմական ճշմարտութեանը և «մեծ» օպերայի տրադիցիաներին ու, առաջին հերթին, Չուհաջեանի երաժշտութեան ոճին համաձայն՝ յագեցուած լինէր գործողութիւններով և բեմական գրաւիչ էֆեկտներով»[29]։

Երաժշտական աշխատանքները այսպէս կը նկարագրէ Ծահվերդեան. «Ստեղծագործութեան սիւժէտային, դրամատիկ և հոգեբանական հարստացումը նոր լիբրետոյում առաջ քաշեց երաժշտութեան համապատասխան խմբագրման և վերամշակման հարցը։ Անհրաժեշտ էր հրաժարուել հին ռեչիտատիւներից՝ նրանք փոխարինելով ստեղծագործութեան դինամիկ կառուցուածքին համապատասխանող նոր ռեչիտատիւներով։ Միւս կողմից, թէպէտեւ համարեայ ամբողջ պարտիտուրան, առանց ռեչիտատիւների, պահպանուեց (գործողութեան նոր պլանաւորմամբ անխուսափելիօրէն թելադրուած նիւթի որոշ վերադասաւորումով), սակայն առանձին էպիզոդները պահանջեցին խմբագրական վերանայում և զարգացում՝ հերոսական տարրն ուժեղացնելու նպատակով։ Կարիք եղաւ մտցնել մի շարք նոր երաժշտական էպիզոդներ, և, վերջապէս, անհրաժեշտութիւն զգացուեց նորից գործիքաւորել ամբողջ օպերայի երաժշտութիւնը։ Ինչպէս հեղինակային հիմնական տեքստի սրբագրման, այնպէս էլ նոր կտորների մշակման մէջ թատրոնը ձգտել է խնամքով պահպանել ինքնագրի հարստութիւնները և հասնել ամբողջ ստեղծագործութեան ոճային լիակատար միասնութեանը»[30]։

Անհրաժեշտ կը նկատենք այստեղ որոշ լուսաբանութիւններ կատարել։ Համեմատելով Հայաստանի տարբերակը և Չուհաճեանին ինքնագիր նուագագրութիւնը, կը նկատենք՝ որ ոչ միայն բոլոր աներգները (ռեչիթաթիւները) նորովի յօրինուած են, այլ կատարուած են մեծ կրճատումներ, տեսարաններու կամայական վերադասաւորումներ, ոչ աներգային մասերու երաժշտական խոր փոփոխութիւններ։ Բազմաթիւ տեսարաններու նուագակցութիւնը ոչ թէ վերագործիքաւորուած է, այլ նորովի յօրինուած. նոր խմբագիրներուն չբաւարարելով Չուհաճեանի նուրբ, թափանցիկ նուագակցութիւնը՝ ձգտած են ռուսական դպրոցին բնորոշ մեծակերտութեան, հերոսականութեան։ Նոյնիսկ միջամտած են դաշնակութեան (հարմոնիներուն), երգիչներու մեղեդիական գիծին մէջ։ Թէրզեան-Չուհաճեան բնագիրը կը բովանդակէ ինն գլխաւոր դերակատար՝ Արշակ (պարիթոն), Ոլոմպիա (սոփրանօ), Փառանձեմ (սոփրանօ), Վաղինակ (թենոր), Գնէլ (թենոր), Ներսէս մեծն (պաս), Վարդան (պարիթոն) և Պոլիքսեն (մեծծօ-սոփրանօ)։ Հայաստանի տարբերակն այսպէս է՝ Արշակ (պարիթոն), Օլիմպիա (սոփրանօ), Փառանձեմ (մեծծօ-սոփրանօ), Տիրիթ (թենոր), Վասակ Մամիկոնեան (պաս), Սպանդարատ (պարիթոն), Ներսէս (պաս), Դրաստամատ (թենոր) և այլ փոքր դերեր։ Այսինքն, բացի Արշակէն, Օլիմպիայէն և Ներսէսէն, մնացած հերոսներուն կամ ձայնատեսակն է փոխուած (Փառանձեմ), կամ դերը ամբողջութեամբ։ Այսօր բոլորին ծանօթ Օլիմպիայի «կանցոն»-ը՝ Չուհաճեանի բնագիրին մէջ եղած Վաղինակի (թենոր) արիան է։ Արշակի «արիոզո»-ն չգտանք ինքնագիրին



մէջ: Ո՞րկէ մուտք գործած է նոր խմբագրութեան մէջ: Երգչային դերամասերը խիստ խճողուած են բառերով՝ որոնք կը խախտեն մեղեդիներուն երգայնութիւնը և անյարմար կը դարձնեն երգը: Ի՞նչ կարիք կայ լիպրէթթոն յարմարցնել պատմական ճշմարտութեան: Թ. Թէրզեանին համար պատմական կողմը յետնախորք մըն էր հիւսելու վիպապաշտական դպրոցին բնորոշ լիպրէթթօ մը՝ ուր սէրն ու մահը առաջնային նշանակութիւն ունէին: Անկարելի է արդէն յօրինուած մեծածաւալ օփերայի մը երաժշտութեան պատշաճեցնել նոր գրական բնագիր մը: Երաժշտութեան պատմութիւնը նման դէպք չի յիշատակեր:

Թէրզեանի լիպրէթթոյին մասին թող թատերագէտներն ու բանասէրները կարծիք յայտնեն: Երաժշտական առումով կը հաստատենք, որ Չուխաճեանի նուագագրութիւնը գեղարուեստական թէ արհեստավարժական (թեքնիքական) տեսանկիւնէն անձեռնմխելի է, գրուած մասնագիտացուած բարձր մակարդակով: Կայ թէ՛ խոր քնարականութիւն և թէ՛ սուր տռամաթիզմ: Գործիքաւորումը՝ վարպետութեամբ կատարուած, անսրգները՝ տրամաբանուած ու նպատակային, երգչային հնչադասութիւնը՝ բնական ու յարմար, երաժշտութիւնը՝ համահնչիւն լիպրէթթոյին թատերգաբանական (տրամաթիրժիք) բովանդակութեան:

«Արշակ Բ.»-ը, այսպէս այլափոխուած, կը բեմադրուի 1945 Նոյեմբեր 17-ին, Երեւանի «Սպենդիարեան» Օփերայի և Պալէի Թատրոնին մէջ: Դերակատարներն էին՝ Ծ. Տալեան (Արշակ), Հ. Դանիէլեան (Օլիմպիա), Տ. Սազանդարեան (Փառանձեմ), Ս. Պետրոսեան (Տիրիթ), Կ. Մարկոսեան (Վասակ), Վ. Գրիգորեան (Սպանդարատ), Ի. Գրեկով (Ներսէս), Գ. Բաղդասարեան (Դրաստամատ): Երաժշտական ղեկավարն էր Մ. Թաւրիզեան, բեմավարը՝ Ա. Գուլակեան, նկարիչը՝ Պ. Սնանեան, պարուսոյցը՝ Ի. Արբատովի [31]: Այս խմբագրութեամբ օփերան կը շարունակուի բեմադրուիլ մինչեւ այսօր, շրջագայելով Մոսկուա, Լենինկրատ, Թիֆլիս, Սոչի, Միացեալ Նահանգներ:

1969-ին, Երեւանի մէջ տպագրութեան կը յանձնուի «Արշակ Բ.»-էն հատուածներ [32]: Զայն կազմողները որոշ չափով տեղեակ եղած են Հայաստանի մէջ կատարուած փոփոխութիւններուն մասին: Այս առիթով, Կ. Մարկոսեան իրաւացիօրէն կը նկատէ՝ թէ գրական «տեքստը երաժշտական չէ, երգելու համար անյարմար: Այնպիսի տպաւորութիւն է ստացւում, թէ տեքստը երաժշտութեանը յարմարեցնելու փոխարէն արուած է հակառակը, և դրանից մեղեդին բազմիցս ենթարկուել է կամայական փոփոխութիւնների: Էլ չենք խօսում այն մասին, որ աջ ու ձախ հանդիպում են սխալ շեշտերի» [33]: Հետեւաբար, այս ժողովածուին համար Պարոյր Միքայէլեան կը գրէ նոր բառեր՝ հիմնուելով Գուլակեանի տարբերակին վրայ և ոչ թէ բնագիրին: Միքայէլեանին տարբերակը, այնուամենայնիւ, երգչային առաւելութիւններ ունի Գուլակեանէն: Գալով երաժշտութեան, «ժողովածուն կազմելիս որոշուեց հատուածները վերցնել օպերային թատրոնի տարբերակից, քանի որ սա լայն ժողովրդականութիւն է վայելում: Միաժամանակ խմբագրական լուրջ աշխատանքով վերականգնուել է հեղինակի բնագիրը» [34]: Ճիշտ է, նուագակցութեան մէջ նկատելի տարբերութիւններ կան Երեւանի օփերային մէջ գործածուող տարբերակէն, բայց շատ հեռու են Չուխաճեանի բնագիրէն:

Այս ժողովածուէն երեք երգ նոյնութեամբ կը վերատպուի 1975-ին, Երեւանի մէջ լոյս տեսած հայկական օփերաներու ժողովածուի մը մէջ [35]:

1976-ին, Մոսկուայի մէջ կը հրատարակուի նոյնպէս երեւանեան տարբերակի առաջին արարին նախանուագն ու երգչախումբի տեսարանը՝ ռուսերէն բառերով, որ չկար նախորդ ժողովածուներուն մէջ [36]:

1982-ին կը ձայնագրուի և 1985-ին Խորհրդային Միութեան «Մելոտիա» սկաւառակներու ընկերութիւնը կը հրապարակէ «Արշակ Բ.»-ը, ուր , բնականաբար, պահպանուած է 1945-ի խմբագրութիւնը: Դերակատարներն են՝ Մ. Երկաթ (Արշակ), Գ. Գասպարեան (Օլիմպիա), Գ. Գալաչեան (Փառանձեմ), Տ. Լեւոնեան (Տիրիթ), Ռ. Բաբուրեան (Սպանդարատ), Ն. Յովհաննէսեան (Ներսէս), Մ. Դաւթեան (Դրաստամատ), Վ. Ցարութիւնեան (Վասակ): Երաժշտական ղեկավար՝ Ա. Քաթանեան: Չ'ուշանար նաեւ անոր շարժանկարի նկարահանումը:

Հեղինակային նուագագրութեան մէջ բացակայելով նախերգանքը, ան անյայտ մնաց խորհրդահայ երաժշտագէտներուն [37]: Երեւանի Չուխաճեանի դիւանին մէջ կարողացանք ի մի բերել այդ նախերգանքին բեկորները և կազմել ամբողջական նուագագրութիւնը, որուն նուիրուած յօդուածաշար մը հրատարակեցինք Գահիրէի «Արեւ» օրաթերթին մէջ [38], և զայն դաշնակի փոխադրելով նուագեցինք Գահիրէի Կոկանեան Սրահին մէջ, 1992 Ապրիլ 9-ին [39]:

Այսօր, արդէն անհրաժեշտութիւն դարձած է վերականգնել ու բեմադրել իսկական Չուխաճեանը: Հիմնական դժուարութիւնը հոգեբանական կողմն է: Աւելի քան յիսուն տարի է՝ որ հասարակութեան լսողութեան մէջ արմատաւորուած է այլափոխուած տարբերակը: Ժամանակ պէտք պիտի ըլլայ ընդունելու հարազատ բնագիրը:

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ



ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1- Տե՛ս Նուպար Յ. Ալիքսանեան, Տիգրան Չուհաճեան, իր կեանքն ու արուեստը, Թէոդիկ, «Ամէնուն Տարեցոյցը», Վենետիկ, 1926, էջ 454:

2- Գ. Խ. Ստեփանեան, «Արշակ Բ.» օպերայի ստեղծագործական պատմութեան մի քանի հարցեր, «Լրաբեր հասարակական գիտութիւնների», Երեւան, Օգոստոս 1972, էջ 20:

3- Նուպար Յ. Ալիքսանեան, նշ. յօդ.ը, էջ 455:

4- Սմբատ Քէլէճեան, Յուշեր արեւմտահայ թատրոնի պատմութիւնից (անտիպ), Երեւանի «Չարենց» Գրականութեան և Արուեստի Թանգարան, Սմբատ Քէլէճեանի դիւան, թիւ 1, էջ 104-105:

5- Հայերը թուրք թատրոնին մէջ, «Անահիտ», հանդէս ամսեայ, Փարիզ, Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899, թիւ 1-2, էջ 30:

6- Տե՛ս Ծարասան, Թրքահայ բեմն և իր գործիչները (1850-1908), Կ. Պոլիս, 1914, էջ 48:

7- Հմմտ. Ծարասանի նշ. աշխ.ը, էջ 48-49, Ա. Թալասոյի երկու յօդուածներուն հետ՝ Հայերը թուրք թատրոնին մէջ, նոյն տեղը, էջ 30-31 և Թրքական ժամանակակից թատրոնը, «Անահիտ», Փարիզ, Յունուար 1905, թիւ 1, էջ 19-20:

8- Ն. Պէշիկթաշլեան, Տիգրան Չուհաճեան, «Ակօս», ամսագիր, Պէյրութ, Յունուար 1955, թիւ 1 (72), էջ 53:

9- Տե՛ս Գ. Ստեփանեան, նշ. յօդ.ը, էջ 21:

10- Գառնիկ Ստեփանեան յիշեալ յօդուածին մէջ կը մէջբերէ Մինաս Չերազի գրութիւնը՝ տպագրուած «Երկրագունդ»-ին մէջ, 1870 թուականին, ուր կը կարդանք հետեւեալը. «Գիշեր մը, այն գիշերը, ուր պ. Թ. Թէրզեանի «Արշակ Բ.»-ին ներածութիւնը կը նուագուէր, Կայսերական թատրոնին առջեւէն կ՚անցնէի շուտաքայլ: Մի հետաքրքրութիւնով, զոր դիւրին է բացատրել, ուզեցի ականջ դնել մի հայ տաղանդի հրաշակերտին, պ. Տ. Չուհաճեանի նուագերգութիւնին: Ներս մտայ ուրեմն և մի քանի մօգիչ խազեր լսեցի իսկոյն, մոլորեալ նուագներ, որք թատրէն դուրս սպրդած՝ կը թափառէին, կարծես անտարբեր խուժանը հմայելու համար...: Այդ նուագները այնչափ ախորժ էին, որչափ անցորդին ախորժ է շուշանի մելամաղձիկ բոյրը, որ հեռին կը ծաւալի թեթեւասոյր և եթերը կը խնկէ շուրջանակի: Բաւ էր, ուղիս շարունակեցի. ալ երեւակայութեանս մէջ կրնայի շինել ներածութեան միւս մասերը, որպէս հնագէտը՝ մի աւեր շէնքի բեկորները տեսնելով՝ կ՚ամբողջացնէ զայն իր մտքին հաշիւներովը: Կրնայի երեւակայել մի հայի յաղթանակը Ապոլոնի հանրապետութեան մէջ»: Այնուհետեւ, Չերազ կը գրէ Չուհաճեանի երաժշտութեան իր վրայ թողած ազդեցութեան մասին, նշելով անոր փափկացնող ներդաշնակութիւնը, հոգիները զտելու և մաքրելու ուժը, և զայն գերադասելով Ռոսսինիի «Օթէլլո»-յէն:

Այստեղ, Չերազ ակնյայտօրէն կը խօսի միայն նախերգանքին մասին: Ըստ Գ. Ստեփանեանին, Չերազին ծանօթ պէտք է ըլլար օփերային ամբողջ երաժշտութիւնը,«այլապէս Չուհաճեանին չէր գնահատի օպերային արուեստում ունեցած վարազդատեան քայլերի համար, չէր համեմատի Ռոսինիի հետ»: Սակայն, նկատի պէտք է ունենալ՝ որ Մ. Չերազ այս տողերը գրած ժամանակ ընդամէնը տասնութ տարեկան էր: Գրութեան ոճը գիտական չէ և մեր կարծիքով, վերջին նկարագրութիւնները իր բոցավառ երեւակայութեան արդիւնքն են: Նախերգանքի հնչիւններուն հմայքին տակ, տասնութամեայ պատանին՝ իր երեւակայութեան մէջ հիւսած է ամբողջ օփերային անձնական տպաւորութիւնը: Նաեւ, հնագէտի հետ համեմատութիւնը ցոյց կու տայ՝ թէ Չերազ լոկ նախերգանքը լսելով և առանց տեղեակ ըլլալու մնացած մասերուն, իր մտքին մէջ վերականգնած է ողջ օփերան, ինչպէս հնագէտը աւերակներու հիման վրայ պիտի վերականգնէր ամբողջ շէնքը:

Երկրորդ կէտը՝ որուն վրայ կը հիմնուի Ստեփանեան, այն է՝ որ Մ. Չերազ ժամանակի առումով չէր հասներ փողոցին մէջ լսել նախերգանքին մէկ մասը, որմէ հմայուելով մտնել թատրոն, դիտուիլ Չուհաճեանի տաղանդով և աճապարելու պատճառով թողուլ ու հեռանալ թատրոնէն: «Արդ, «Արշակ Բ»-ի նախերգանքը հազիւ 3-4 րոպէ է տեւում: Չերազի նկարագրածը ինչպէս տեղադրել այնքան սեղմ ժամանակի մէջ», կը գրէ Ստեփանեան: Ճշտում մը:Ստեփանեան նկատի ունի Երեւանի օփերային մէջ ներկայացուող «Արշակ Բ.»-ի ոչ ինքնագիր նախանուագը՝ որ իրօք 3-4 վայրկեան կը տեւէ: Երեւանի բեմադրութեան մինչեւ այսօր անծանօթ է բուն նախերգանքը, որուն տեւողութիւնն է 9-10 վայրկեան՝ բաւարար կատարելու այդ բոլոր գործողութիւնները:

Ստեփանեանին երրորդ փաստարկումը «նուագերգութիւն» բառն է՝ զոր կը մեկնաբանէ իբրեւ օփերա: Չերազ՝ ինչպէս կը յուշէ ամբողջ յօդուածին ոճը, պարզապէս ցանկացած է պատկերաւոր բառ մը օգտագործել՝ ոչ անպայմանօրէն օփերայի իմաստով:

Մեր կարծիքով, Մ. Չերազի գրութեան մէջ ամբողջ օփերային ծանօթ ըլլալու ակնարկում չկայ:

11- Յ. Վ. Անէմեան, Պարզ երգ և արուեստական երաժշտութիւն, «Արեւելք», օրագիր, Կ. Պոլիս, 7 /19 Յունիս 1890, թիւ 1918, էջ 3:

12- «Մշակ», շաբաթաթերթ, Թիֆլիս, 26 Հոկտեմբեր 1872, թիւ 42, էջ 4:

13- Այս տեղեկութիւնը Տ. Գալէմնեան անձամբ պատմած է Ն. Պէշիկթաշլեանին (տե՛ս Ն. Պէշիկթաշլեան, Տիգրան Չուհաճեան, «Ակօս», ամսագիր, Պէյրութ, Մարտ-Ապրիլ 1955, թիւ 3-4 (74), էջ 92):

14- Հայերը թուրք թատրոնին մէջ, նոյն տեղը, էջ 31:



15- Տե՛ս Յ. Վ. Անէմեան, նշ. յօդ.: Նոյն հեղինակ, Զէյթիրէ, «Արեւելք», օրագիր 31 Յունուար / 12 Փետրուար 1891, թիւ 2114, էջ 2: Գ.Խ. Ստեփանեան, Թուրքական աղբիւրները՝ թուրք թատրոնի զարգացման գործում հայերի դերի մասին, Երեւան, 1983, էջ 42:

16- Տե՛ս ծանօթագրութիւն թիւ 10:

17- Ս. Քէսէճեան, նշ. ձեռագիր, էջ 106:

18- Տե՛ս Թէոդիկ, «Ամէնուն Տարեցոյցը», Վենետիկ, 1926, էջ 464:

19- Յ. Վ. Անէմեան, Պարզ երգ և արուեստական երաժշտութիւն, նոյն տեղը, էջ 3: Նոյն հեղինակ, Զէյթիրէ, նոյն տեղը, էջ 2-3:

20- Չուխաճեան նուագահանդէս, «Արեւելք», օրագիր, 11 /23 Մայիս 1889, թիւ 1605, էջ 2:

21- Երաժշտական, «Արեւելք», օրագիր, 4 Փետրուար 1892, թիւ 2408, էջ 2:

22- Ս. Քէսէճեան կը գրէ՝ թէ նախերգանքը «1895-ին Ապրիլ ամսուն մէջ Քօնքօրտիա թատրոնին մէջ իր (իմա՛ Տ. Չուխաճեանին, Հ.Ա.) նուագահանդէսին՝ 100 հոգիէնց մեծ նուագախումբի մը կողմէ նուագուեցաւ» (նշ. ձեռագիրը, էջ 106): 1895-ը ձեռագրական վրիպակ մը ըլլալու է, քանի որ Չուխաճեան «Քոնքորտիա»-յին մէջ՝ երկար բացակայութենէ ետք, երկու յաջող ելոյթներ կ'ունենայ 1896 թուականին: Մէկը՝ 10/22 Մարտին (տե՛ս Թատերական ներկայացում, «Արեւելք», օրագիր, 6 /18 Մարտ 1896, թիւ 3618, էջ 3: Երէկուան ներկայացումը, «Արեւելք», 11/23 Մարտ 1896, թիւ 3622, էջ 3), միւսը՝ Մարտ 31 /Ապրիլ 12-ին (տե՛ս Թատերական ներկայացում, «Արեւելք», օրագիր, 29 Մարտ /10 Ապրիլ 1896, թիւ 3635, էջ 3: Երուանդ, Բեմական արձագանգ, «Արեւելք», 2 /14 Ապրիլ 1896, թիւ 3638, էջ 1 ): Ըստ Քէսէճեանին յիշատակած ամսաթիւին՝ (Ապրիլ), խօսքը երկրորդին մասին պէտք է ըլլայ: Մամուլը նշած չէ կատարուած ստեղծագործութիւնները, որով Քէսէճեանին հաղորդածը լրացուցիչ կարեւոր տեղեկութիւն մըն է: Սակայն Քէսէճեան կը գրէ նաեւ՝ որ նախերգանքը հարիւր հոգիէնց նուագախումբի մը կողմէ կը նուագուի, որ զարմանալի է 90-ական թուականներու պոլսահայութեան համար: «Արեւելք» կը նշէ լոկ քանձեւոր երաժիշտներէ բաղկացած նուագախումբ մը (տե՛ս Թատերական ներկայացում, «Արեւելք», 29 Մարտ/10 Ապրիլ 1896, թիւ 3635, էջ 3)՝ որ կը թուի տրամաբանական ըլլալ:

23- Մ.Ն., Չուխաճեան նուագահանդէս, «Արեւելեան մամուլ», կիսամսեայ, Զմիւռնիա, 1 Յունիս 1896, թիւ 11, էջ 346:

24- Թատերախաղ նուագահանդէս ի նպաստ որբանոցի, «Արեւելեան մամուլ», Զմիւռնիա, 1 Փետրուար 1897, թիւ 3, էջ 103:

25- Ս. Մ. Ծոցիկեան, Պ. Սինանեանի նուագահանդէսը, «Լուսաբեր», լրագիր, Գահիրէ, 11 Մայիս 1905, թիւ 65, էջ 1:

26- Թատերախաղ նուագահանդէս Մանկեան-Սինանեան խմբերուն կողմէ, «Բիզանդիոն», հայաթերթ ամէնօրեայ, Կ. Պոլիս, 26 Սեպտեմբեր /9 Հոկտեմբեր 1906, թիւ 3060, էջ 3:

27- Նուպար Յ. Ալիքսանեան, Գէորգ Եաղուպեան, Թէոդիկ, «Ամէնուն Տարեցոյցը», Փարիզ, 1929, էջ 430:

28- Տե՛ս օրինակ, Արամ Անտոնեան, Չուխաճեանի մահարձանը, «Արեւելք», օրագիր, 30 Հոկտեմբեր /12 Նոյեմբեր 1904, թիւ 5710, էջ 1: Յ. Սինանեան, Տիգրան Չուհաճեան (անձնական յիշատակներ), «Մանզումէի էֆքեար», Կ. Պոլիս, 20 Յունուար 1907, թիւ 1714, էջ 1:

29- Ալեքսանդր Շահվերդեան, Հայ երաժշտութեան պատմութեան ակնարկներ, XIX-XX դդ. (Մինչսովետական շրջան), Երեւան, 1959, էջ 301:

30- Անդ, էջ 302:

31- Տե՛ս Ռ. Զարությունեան, Սովետահայ թատրոնի տարեգրութիւն, գիրք երկրորդ (1941-1960), Երեւան, 1969, էջ 186:

32- Տիգրան Չուխաջեան, Արշակ երկրորդ, օպերա, հատուածներ, կլաւիր, կազմեցին և խմբագրեցին՝ Կարլոս Մարկոսեան, Լեւոն Աստուածատրեան, Երեւան, 1969:

33- Անդ, էջ 3:

34- Անդ, էջ 3:

35- Ընտիր արիաներ եզեր հայկական օպերաներից դաշնամուրի նուագակցութեամբ, կազմող՝ Թ. Կ. Շահնազարեան, Կ. Հ. Մարկոսեան, Երեւան, 1975, էջ 3-16:

36-Хоры армянских композиторов, составитель И. Бабакехаян, Москва, 1976, с. 28-48.

37- Տե՛ս Նիկողոս Թահմիզեան, Չուխաջեանը յայտնի և անյայտ գանձերով, «Սովետական Արուեստ», ամսագիր, Երեւան, թիւ 12, 1987, էջ 22:

38- Տե՛ս մեր յօդ.ը, «Արշակ Բ.» օփերայի նախերգանքը, «Արեւ», օրաթերթ, Գահիրէ, 11-17 Դեկտեմբեր 1991, թիւ 21936-21941:

39- Տե՛ս Հայկ Սարգիսեան, Նոր երաժշտագէտի մը ծնունդը, «Արեւ», օրաթերթ, 24 Ապրիլ 1992, թիւ 22044, էջ 3: